Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՄԱՅԻՍ 10 1961

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի Նախագահությունը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը ջերմորեն ողջունում և շնորհավորում են Հայաստանի բանվորներին, կոլտնտեսականներին, ինտելիգենցիային, բոլոր աշխատավորներին՝ նշանավոր տարեթվի՝ Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակի առթիվ:

Հայաստանի Կոմունիստական պարտիան Սովետական Միության Կոմունիստական պարտիայի մարտական ջոկատներից մեկն է: Մեր երկրի մյուս ժողովուրդների հետ սերտորեն միաբանած, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ Հայաստանի աշխատավորներն անցել են ինքնակալության և կապիտալիզմի դեմ, դաշնակների նացիոնալիստական բանդաների դեմ մղված պայքարի մեծ ու փառավոր ուղի: Սովետական իշխանության հաղթանակով Հայաստանի աշխատավորները պատմության մեջ առաջին անգամ ստացան իսկական ազատություն և անկախություն: Սովետական Հայաստանը, վերջ տալով դարավոր հետամնացությանը, սոցիալիստական շինարարության տարիներին դարձել է ծաղկուն, խիստ զարգացած սոցիալիստական ռեսպուբլիկա:

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները և ինտելիգենցիան սովետական ամբողջ ժողովրդի հետ մեկտեղ արիաբար պաշտպանեցին մեր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը, ցուցադրեցին սովետական ջերմագին հայրենասիրություն և նվիրվածություն Կոմունիստական պարտիային, կոմունիզմի գործին:

Սոցիալիստական մեծ վերափոխությունները հայ ժողովրդի առջև բաց արեցին պայծառ ապագայի՝ կոմունիզմի լայն ճանապարհը:







ՍՄԿՊ XXI համագումարը մեր երկրի առջև դրեց կոմունիզմի ծավալուն կառուցման, արտադրողական ուժերի հետագա հզոր վերելքի, սովետական մարդկանց նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ աճման վիթխարի ծրագիր: Անդրկովկասի մյուս ժողովուրդների հետ ջերմ բարեկամությամբ, Սովետական Միության եղբայրական ժողովուրդների միասնական ընտանիքում Հայաստանի աշխատավորներն անձնվիրաբար պայքարում են յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար: Արագ տեմպերով զարգանում է ռեսպուբլիկայի արդյունաբերությունը, այդ թվում այնպիսի կարևորագույն ճյուղեր, ինչպիսիք են հաստոցաշինությունը, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, սարքաշինությունը, քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան: Անշեղորեն աճում է ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը: Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքն ընթացիկ տարում 1913 թվականի մակարդակը կգերազանցի համարյա 70 անգամ: Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունի վերջերս շահագործման հանձնված Ղարադաղ—Երևան



գազամուղը, որի կառուցումը ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների բարեկամության և փոխօգնության վառ օրինակ է:

Արմատապես փոխվել է հայ գյուղի դեմքը: Հավերժի գիրկն են անցել նրա աղքատությունն ու հետամնացությունը: Հենվելով կոլտնտեսային կարգերի առավելությունների վրա, հայ գյուղի աշխատավորները պայքար են մղում գյուղատնտեսական արտադրության հետագա աճման համար:

Աճում է աշխատավորների նյութական բարեկեցությունը, բարելավվում են նրանց բնակարանային-կենցաղային պայմանները: Ծաղկում է հայ ժողովրդի սոցիալիստական կուլտուրան: Ռեսպուբլիկայի հանրակրթական դպրոցներում սովորում են ինը անգամ շատ երեխաներ, քան 1913 թվականին: Բարձրագույն և մասնագիտական միջնակարգ դպրոցներում սովորում են 33 հազար ուսանողներ: Ռեսպուբլիկայում ստեղծված է գիտահետազոտական հիմնարկների, կինոթատրոնների, գրադարանների, կուլտուրայի պալատների, ակումբների, թանգարանների, առողջապահական հիմնարկների, մանկապարտեզների և մանկամսուրների լայն ցանց: Հաջողությամբ զարգանում են գրականությունն ու արվեստը:

Սովետական Հայաստանի աշխատավորներն

իրենց պանծալի հոբելյանը՝ ռեսպուբլիկայի 40-ամյակը նշում են այնպիսի մթնոլորտում, երբ մեր ամբողջ ժողովուրդը պատրաստվում է արժանավայել կերպով դիմավորելու Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարը:

Նախահամագումարյան մրցությունը լայնորեն ծավալվել է Հայաստանի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում: Ձեռնարկությունների և կառույցների կոլեկտիվները պայքարում են աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, պլանները ժամկետից շուտ կատարելու համար, արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու և որակը բարձրացնելու համար: Գյուղի աշխատավորները անձնվիրաբար աշխատում են կենսագործել գյուղատնտեսության հետագա վերելքի այն ծրագիրը, որը մշակել է ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը հաստատ վստահություն են հայտնում, որ Հայաստանի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ բոլոր ջանքերը կգործադրեն, որպեսզի է՛լ ավելի արագ տեմպերով առաջ



շարժվեն կոմունիստական շինարարության ուղիով և պատվով կկատարեն ռեսպուբլիկայի առջև կանգնած մեծ ու պատասխանատու խնդիրները:

Տաղանդավոր հայ ժողովրդին մաղթում ենք նոր հաջողություններ կոմունիզմի կառուցման, ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի կարգացման, աշխատավորության բարեկեցության հետագա անշեղ բարձրացման ասպարեզում:

Կեցցե՜ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի 40-րդ տարեդարձը:

Կեցցե՜ Հայաստանի Կոմունիստական պարտիան՝ ՍՄԿՊ-ի մարտական ջոկատը:

Կեցցե՜ մեր մեծ Հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը:

Թո՛ղ ամրապնդվի և ծաղկի ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամությունը:

Փա՜ռք Սովետական Միության Կոմունիստական պարտիային:

ՍՄԿՊ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ
ԿՈՄԻՏԵ

ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ
ՍՈՎԵՏ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ

*Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները մեր հզոր սոցիալիստական Հայրենիքի հաջողությունների համար մեծ հպարտությամբ ու բերկրանքով են դիմավորում իրենց պանծալի հոբելյանը՝ Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակը։*

*Սովետական Հայաստանի 40-ամյակի տոնակատարությունը տեղի է ունենում քաղաքական և աշխատանքային հզոր խանդավառության իրադրության մեջ, յոթնամյակի երրորդ տարվա առաջադրանքների հաջող կատարման, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարն արժանավայել կերպով դիմավորելու համաժողովրդական սոցիալիստական մրցության պայմաններում։*

*Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը*



*ժամկետից շուտ կատարեց ընթացիկ տարվա քառամսյա պլանը։ Գյուղատնտեսության աշխատավորները, իրագործելով ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի պատմական որոշումները, հաջողությամբ ավարտում են գարնանացանը և պայքար են ծավալել բարձր բերք ստանալու համար, անասնապահական մթերքների հետագա ավելացման համար։*

*Հայ ժողովրդի ազգային վերածնության տոնի մեզ համար նշանավոր այս օրը մենք՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հանդիսավոր նիստի մասնակիցներս, ռեսպուբլիկայի բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի անունից, բոլոր աշխատավորների անունից մեր սրտագին ողջույնն ենք հղում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեին, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությանն ու Սովետական կառավարությանը և անսահման սեր ու երախտագիտություն ենք հայտնում այն հոգատարության և ուշադրության համար, որոնցով հայ ժողովուրդը շրջապատված է Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում։*

Մենք մեր սրտագին շնորհակալությունն ենք հայտնում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Առաջին քարտուղար, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ, հայ ժողովրդի թանկագին բարեկամ Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովի մասնակցությունը տոնահանդեսներին, նրա բարեկամական խորհուրդները և ջերմ ողջույնի խոսքերը մեր տոնը դարձրին է՛լ ավելի բերկրալի, է՛լ ավելի վառ ու բովանդակալի։

Մեր ժողովրդի բազմադարյան պատմությունը ազատության և ազգային անկախության հաստատակամ պայքարի պատմություն է։ Հին ժամանակներից հայ ժողովրդի լավագույն զավակները իրենց Հայրենիքի ազատագրությունը կապել են ռուս մեծ ժողովրդի ռևոլյուցիոն պայքարի հետ։

Մեծ Հոկտեմբերի այգաբացը լուսավորեց հայ ժողովրդի ազատագրության ուղին։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի ապստամբ բանվորներն ու գյուղացիները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ տապալեցին դաշնակների ատելի տիրապետությունը և Հայաստանում հաստատեցին Սովետական իշխանություն։



Մեծ Լենինը, ողջունելով հայ ժողովրդի հաղթանակը, գրեց. «Ողջունում եմ... իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»։ Հայ ժողովրդի մեծ բարեկամ և ազատարար Վլադիմիր Իլյիչ Լենինի այս խոսքերը կայծակի արագությամբ տարածվեցին Հայաստանի քաղաքներում և գյուղերում, լեռներում և հովիտներում, երջանկությամբ ու բերկրանքով լցրին աշխատավորների սրտերը։

Անշեղորեն ընթանալով մեծ Լենինի նշած ուղիով, հայ ժողովուրդը անցած 40 տարում իր հայրենիքը՝ ցարական Ռուսաստանի երբեմնի հետամնաց ծայրամասը, դարձրել է բարձր զարգացած արդյունաբերության, սոցիալիստական գյուղատնտեսության և առաջավոր կուլտուրայի ռեսպուբլիկա։

Արագ տեմպերով զարգանում է մետալուրգիական, քիմիական, մեքենաշինական և սարքաշինական, սննդի և թեթև արդյունաբերությունը։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը ընթացիկ տարում համարյա 70 անգամ կգերազանցի 1913 թվականի մակարդակը։ Մենք ուրախությամբ զեկուցում ենք ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեին և Սովետական կառավարությանը, որ հետևելով երկրի էլեկտրիֆիկացման մասին Վ. Ի. Լենինի պատգամնե-

րին, Հայաստանի աշխատավորները Սովետական իշխանության տարիներին ավարտեցին ռեսպուբլիկայի համատարած էլեկտրիֆիկացումը։

Ապշեցուցիչ փոփոխություններ տեղի ունեցան նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ասպարեզում։

Գյուղացու ազատագրումը ճնշումից և շահագործումից, կոլեկտիվ տնտեսությունների ստեղծումը, գյուղատնտեսության տեխնիկական բազայի ամրապնդումն անչափ բարձրացրին հողագործության կուլտուրան։

Պարտիան և կառավարությունը բարձր գնահատեցին գյուղատնտեսության զարգացման գործում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների և բոլոր աշխատավորների անձնվեր աշխատանքը, Հայկական ՍՍՌ-ն արժանացնելով ամենաբարձր կառավարական պարգևի՝ Լենինի շքանշանի։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մշտական հոգատարության շնորհիվ արմատապես բարելավվել է աշխատավորների նյութական բարեկեցությունը։ Անչափ բարձրացել է ժողովրդի կուլտուրական մակարդակը։ Այժմ ռեսպուբլիկայի հինգ բնակչից մեկը սովորում է։ Գիտահետազոտական ինստիտուտներում և



բուհերում աշխատում են հազարավոր գիտաշխատողներ, բազմաթիվ ականավոր գիտնականների անուններ լայնորեն հայտնի են ռեսպուբլիկայի սահմաններից դուրս։ Բուռն կերպով ծաղկել է հայ ժողովրդի ազգային կուլտուրան, որն ստացել է նոր, սոցիալիստական բովանդակություն։

Ռեսպուբլիկայի աշխատավորները միշտ հիշում են, որ Սովետական Հայաստանի հաջողությունները հնարավոր դարձան միմիայն Սովետական իշխանության, Կոմունիստական պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ, Սովետական Միության ժողովուրդների ու ամենից առաջ մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր ժողովուրդների մեծ եղբոր ու բարեկամի՝ ռուս մեծ ժողովրդի անխախտ բարեկամության և անշահախնդիր օգնության շնորհիվ։

Ամփոփելով 40 տարում ձեռք բերած հաջողությունների արդյունքները, Սովետական Հայաստանի աշխատավորները գիտակցում են, որ հոբելյանը պարտավորեցնում է բազմապատկել իրենց ջանքերը, արմատախիլ անել արդյունաբերության, գյուղատնտեսության բնագավառի թերությունները, ամեն

ինչ անել ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումների հաջող կատարման, մեր երկրի կոմունիստական շինարարության փառահեղ պլանների կենսագործման համար։

Հայաստանի աշխատավորները սովետական բոլոր մարդկանց հետ մեկտեղ իրենց մեծ Հայրենիքի համար օրինական հպարտությամբ ջերմ հավանություն են տալիս և պաշտպանում են Սովետական կառավարության խաղաղասեր արտաքին քաղաքականությունը, որը ծառայում է ամբողջ աշխարհի կայուն խաղաղության ապահովմանը։

Քառասնամյակի այս նշանավոր օրը երախտագետ հայ ժողովուրդը իր խոր երախտագիտության առաջին խոսքն ուղղում է բոլոր ժողովուրդների խաղաղության, երջանկության ու անվտանգության անխոնջ մարտիկ Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին։

Մենք՝ հանդիսավոր նիստի մասնակիցները, Հայաստանի բոլոր աշխատավորների անունից հավաստիացնում ենք ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեին ու Սովետական կառավարությանը և անձամբ Ձեզ, թանկագին Նիկիտա Սերգեևիչ, որ հայ ժողովուրդը, ինչպես երբեք, համախմբված է հարազատ



կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության շուրջը, այսուհետև նույնպես բարձր կպահի լենինիզմի անպարտելի դրոշը, ուժ ու եռանդ չի խնայի մեր սիրելի Հայրենիքի հզորության ամրապնդման համար, կոմունիզմի փառահեղ շենքի կառուցման համար։

Թող կեցցե՛ և բարգավաճի՛ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան եղբայրական ժողովուրդների միասնական ընտանիքում։

Թող կեցցե՛ և բարգավաճի՛ մեր սիրելի Հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։

Կեցցե՛ Սովետական Միության ժողովուրդների մեծ ու անխախտ բարեկամությունը։

Կեցցե՛ մեր հարազատ Սովետական կառավարությունը։

Փա՛ռք Սովետական Միության Կոմունիստական պարտիային և հավատարիմ լենինյան ընկեր Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեին։

Միաձայն ընդունվել է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հանդիսավոր նիստում,

1961 թ. մայիսի 6-ին։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՆԾԱԼԻ ՀՈԲԵԼՅԱՆԸ

*Սոցիալիզմի կենարար ուժը հայ ժողովրդին բերեց մեծ վերածնունդ, նրա գիտության ու կուլտուրայի, բարեկեցության վերելք, նրա տաղանդների ու ձիրքերի ծաղկում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ

Ուրախ ու երջանիկ օրեր է ապրում հայ ժողովուրդը։ Նա Սովետական Միության եղբայրական ժողովուրդների հետ միասին մեծագույն խանդավառությամբ տոնեց Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման քառասնամյակը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ, եղբայրական ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, հարազատ Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ Հայաստանի աշխատավորները 40 տարի առաջ տապալեցին արևմտյան իմ-





պերիալիստների դրածո դաշնակների բռնապետությունը և երկրում հաստատեցին Սովետական իշխանություն։ Իրականացավ հայ ժողովրդի վաղեմի երազը՝ Հայաստանը ձեռք բերեց ազատություն և ինքնուրույն պետականություն։

Օրերս ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը, ջերմորեն ողջունելով և շնորհավորելով մեր ռեսպուբլիկայի աշխատավորներին՝ Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակի առթիվ, նշեցին, որ «Սովետական իշխանության հաղթանակով Հայաստանի աշխատավորները պատմության մեջ առաջին անգամ ստացան իսկական ազատություն և անկախություն։ Սովետական Հայաստանը, վերջ տալով դարավոր հետամնացությանը, սոցիալիստական շինարարության տարիներին դարձել է ծաղկուն, խիստ զարգացած սոցիալիստական ռեսպուբլիկա»։

Սրբությամբ իրականացված են մեծ Լենինի պատգամները։ Այժմ Սովետական Հայաստանը դարձել է համատարած էլեկտրիֆիկացիայի ռեսպուբլիկա։ Դրա շնոր-





հիվ մեր ռեսպուբլիկայում անընդհատ ծաղկում և բարգավաճում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը։ Բավական է ասել, որ Սովետական իշխանության տարիներին Հայաստանում կառուցվել են մոտ 500 գործարան, ֆաբրիկա և այլ խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ։ Միայն անցած՝ 1960 թվականին արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալը մոտավորապես 70 անգամ գերազանցեց 1913 թվականի արդյունաբերական արտադրության մակարդակը։ Ամեն տարի շահագործման են հանձնվում նոր գործարաններ, ֆաբրիկաներ, գործարկվում են նոր էլեկտրակայաններ։ Հետպատերազմյան տարիներին ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի արտադրության աճի տարեկան միջին տեմպերը կազմում են 15 տոկոս։ Այժմ Սովետական Հայաստանն ունի հզոր, առաջավոր տեխնիկայով հագեցված, բազմաճյուղ արդյունաբերություն, որը հաստատորեն առաջատար տեղ է գրավել ռեսպուբլիկայի էկոնոմիկայի մեջ։ Ռեսպուբլիկայում բարձր զարգացման է հասել լեռնահանքային արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, սարքաշինությու-



նը, հաստոցաշինությունը, թեթև և սննդի արդյունաբերությունը։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերված քիմիական արդյունաբերության զարգացման բնագավառում։ Ռեսպուբլիկայի քիմիական ձեռնարկությունները ներկայումս արտադրում են ավելի քան 60 տեսակի զանազան արտադրանքներ, որոնք կարևոր նշանակություն ունեն Սովետական Միության էկոնոմիկայի զարգացման համար։ Այդ ձեռնարկությունների արտադրության ծավալը 1940 թվականի համեմատությամբ աճել է 21 անգամ։

Ռեսպուբլիկայի աշխատավորները ջանք չեն խնայում յոթնամյա պլանը ժամկետից շուտ և որակական բարձր ցուցանիշներով կատարելու, ՍՄԿՊ XXII համագումարն արժանավայել գործերով դիմավորելու համար։ Այս տարվա առաջին եռամսյակի համախառն արտադրանքի արտադրության պլանը կատարված է 103 տոկոսով։

Սովետական Հայաստանի քառասնամյակը նշանակալից հաջողություններով են դիմավորում գյուղատնտեսության աշխատողները։ Կոլտնտեսային կարգի հաղթանակի շնորհիվ արմատապես վերափոխվել է Հայաստանի գյուղատնտեսությունը։ Ստեղ-

վել են հզոր ոռոգիչ սիստեմներ, կոլտնտեսությունների ու սովխոզները հագեցված են ժամանակակից գյուղատնտեսական տեխնիկայով։ 1960 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, գյուղատնտեսության համախառն արտադրանքը համադրելի գներով ավելացավ գրեթե երեք անգամ։ Կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը տարեցտարի ամրապնդվում է, անբաժանելի ֆոնդերն աճում են, կոլտնտեսությունների եկամուտներն ավելանում են։

Գյուղատնտեսության զարգացման գործում ձեռք բերած խոշոր հաջողությունների համար մեր ռեսպուբլիկան 1958 թվականին պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Անցյալ տարի ռեսպուբլիկան ժամկետից շուտ կատարեց պետությանը բամբակ, միս, կաթ և շաքարի ճակնդեղ վաճառելու պլանը։

Այս հաջողությունների հետ միասին դեռևս մեր ռեսպուբլիկայում անբավարար են օգտագործվում գյուղատնտեսության մեջ եղած հնարավորություններն ու ռեզերվները։ Դանդաղ է զարգանում անասնաբուծությունը։

Հայ ժողովուրդը իր ազգային վերածնության տոնը նշանավորեց ժողովրդական



կրթության, առողջապահության, ազգային կուլտուրայի, գիտության, գրականության և արվեստի զարգացման մեծ հաջողություններով։ Հայաստանում մինչև ռևոլյուցիան գրագետների թիվը տասը տոկոսից չէր անցնում, նախասովետական Հայաստանում սովորում էր ընդամենը 35 հազար երեխա, չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն և ստացիոնար թատրոն։ Այժմ Սովետական Հայաստանի հանրակրթական դպրոցներում սովորում է մոտավորապես 320 հազար երեխա, 10 բուհերում և 38 տեխնիկումներում ուսանում է երեսուներեք հազար հոգի։ Լայնորեն իրագործվում է հեռակա բարձրագույն և միջնակարգ կրթությունը։ Սովետական Հայաստանը մեծ նվաճումներ ունի գիտության զարգացման ասպարեզում։ Ռեսպուբլիկայում այժմ բեղմնավոր աշխատանք են կատարում 79 գիտահետազոտական հիմնարկներ, որոնցում աշխատում են 4.300 գիտական աշխատողներ, այդ թվում գիտությունների 169 դոկտորներ և 1.502 թեկնածուներ։

«Հայաստանի գիտնականները, —ասաց ընկ. Ն. Ս. Խրուշչովը օրերս Երևանում արտասանած իր ճառում,— հաջողությամբ մշակում են միջուկային ֆիզիկայի, աստրոֆիզիկայի, աստղագիտության, մաթե-

մատիկայի, հաշվողական տեխնիկայի, կիբեռնետիկայի կարևոր պրոբլեմներ և այլն։

Սովետական Հայաստանում բուռն զարգացում է ապրում ժողովրդական առողջապահությունը։ Եթե 1913 թվականին Հայաստանում եղել է ընդամենը 6 հիվանդանոց, որտեղ աշխատել է 73 բժիշկ, ապա այժմ Սովետական Հայաստանում աշխատում է 4.500 բժիշկ կամ յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է 2 անգամ շատ բժիշկ, քան ԱՄՆ-ում, 2,3 անգամ շատ, քան Անգլիայում, գրեթե 9 անգամ շատ, քան Թուրքիայում և 14 անգամ շատ, քան Իրանում։

Նշանակալից հաջողություններ են ձեռք բերվել աշխատավորների բնակարանային-կենցաղային պայմանները բարելավելու գործում։ Միայն վերջին 15 տարում ռեսպուբլիկայում կառուցվել և շահագործման է հանձնվել ավելի քան 1.600 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, այդ ժամանակամիջոցում գյուղում կոլտնտեսականները կառուցել են 77 հազար տուն։

Մեծ զարգացում է ապրել նաև Սովետական Հայաստանի կուլտուրան։ Ռեսպուբլիկայում ստեղծվել է ակումբների, գրադարանների լայն ցանց։ Եթե 1913 թվականին Հայաստանում եղել է ընդամենը 13 գրա-



դարան՝ 9.000 գրքով, ապա 1960 թվականին Սովետական Հայաստանում միայն մասսայական գրադարանների թիվն անցնում էր 1.140-ից, որոնց գրքերի ֆոնդը կազմում է ավելի քան 7 միլիոն հատոր։

Ռեսպուբլիկայում լիակատար ծաղկման է հասել գրականությունն ու արվեստը։ Ներկայումս Սովետական Հայաստանում գործում են 11 պետական և 10 ժողովրդական թատրոններ։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորներն ավելի մեծ հաջողությունների կհասնեն ընթացիկ յոթնամյակում։ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, Սովետական Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա 2,3 անգամ։ Արդյունաբերական արտադրության տարեկան միջին աճը կկազմի 12,3 տոկոս։ Ժողովրդական տնտեսության մեջ կներդրվի ավելի քան 1,2 միլիարդ ռուբլի (գների նոր մասշտաբով), այսինքն՝ ավելի շատ, քան նախորդ բոլոր հնգամյակներում։

Հայ ժողովրդի ազգային վերածնության տոնն ավելի բերկրալից և նշանավոր դարձավ նրանով, որ Սովետական Հայաստան այցելեց ՍՄԿԿ Կենտկոմի Առաջին քարտուղար, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ, խաղաղության ու ժողովուրդների եր-

ջանկության անխոնջ մարտիկ ընկեր Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը։ Տոնական անմոռանալի օրերին Սովետական Հայաստան էին եկել եղբայրական ռեսպուբլիկաների՝ ՌՍՖՍՌ-ի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի, Ղազախստանի, Վրաստանի, Ադրբեջանի, Լիտվայի, Մոլդավիայի, Լատվիայի, Կիրգիզիայի, Տաջիկստանի, Թուրքմենիայի, Էստոնիայի և Դաղստանի ԱՍՍՌ-ի պատվիրակները, ինչպես նաև արտասահմանյան հայերի ներկայացուցիչները։

Մայիսի 6-ին Երևանում տեղի ունեցավ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հոբելյանական հանդիսավոր նիստ՝ նվիրված Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակին։

Հանդիսավոր նիստի մասնակիցները սիրով ու բերկրանքով ողջունեցին հավատարիմ լենինյան, խաղաղության և ժողովուրդների երջանկության անխոնջ մարտիկ, թանկագին Ն. Ս. Խրուշչովին և մեծ գոհունակությամբ լսեցին նրա փայլուն ու խորիմաստ ճառը։

—◆—



# Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

Ռեսպուբլիկայի գործարաններում, հանքահորերում, կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում օրավուր ծավալվում է սոցիալիստական մրցությունը ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի։ Գործի վերածելով ստանձնած պարտավորությունները, աշխատավորները ջանում են աշխատանքային նորանոր գործերով դիմավորել հարազատ պարտիայի համագումարը, հաջողությամբ նվաճել յոթնամյակի երրորդ տարվա բնագծերը։ Ահա այդ մասին թվեր և փաստեր։

Ժամկետից շուտ՝ ապրիլի 28-ին ռեսպուբլիկայում կատարվեց արդյունաբերության համախառն արտադրանքի չորսամսյա պլանը։ Պլանից դուրս արտադրվել են մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա, էլեկտրական մեքենաներ, ցեմենտ, կաուստիկ սոդա, կաշվե կոշկեղեն, տրիկոտաժ, պանիր, գինի, կոնյակ և այլն։

Անցած չորս ամսում Սանահինի էլեկտրաքարշայինները պլանից դուրս փոխադրել են 90.000 տոննա ժողովրդատնտեսական բեռներ։

Երևանի Կոմպրեսորների գործարանում սկսվեց շարժական նոր կոմպրեսորի փորձարկումը։ Այն ստեղծվել է ձեռնարկության կոնստրուկտորական բյուրոյի կոլեկտիվի ուժերով և օգտագործվելու է կոլտնտեսություններում ու սովխոզներում արտադրական պրոցեսները մեքենայացնելու համար։ Շարժական նոր կոմպրեսորը ծավալով փոքր է, թեթև և խնայողական։ Գործարանի կոլեկտիվը որոշել է տնտեսված հումքի հաշվին ընթացիկ տարում արտադրել նոր կոնստրուկցիայի 50 կոմպրեսոր։

Նախահամագումարյան համաժողովրդական մրցության այս օրերին մեծ եռանդով է աշխատում Ալյումինի գործարանի կոլեկտիվը։ Ժամկետից շուտ ապրիլի 25-ին ձեռնարկությունը կատարեց արտադրանքի արտադրության չորսամսյա ծրագիրը։ Կիրառելով խնայողության խստագույն ռեժիմ, ալյումինագործները տնտեսել են 3 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, մեծ քանակությամբ հումք։ Մայիսմեկյան տոնի նախօրյակին գործարանի նորակառույց ֆոլգագլանման ցեխը թողարկեց մետաղաթաղանթի առաջին տոննաները։

Կիրովական քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները ժամկետից շուտ կատարեցին արտադրանքի արտադրության չորս ամսվա պլանը. յուրացվել է մոտ 30 տեսակի նոր արտադրանք։



Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի № 15 ցեխում օգտագործման հանձնվեց շարժական էլեկտրակայանների հավաքման առաջին կոնվեյերը, որը նախագծել ու մոնտաժել են ձեռնարկության աշխատողները։ Կոնվեյերը հնարավորություն կտա շարժական էլեկտրակայանների հավաքումը կատարել հոսքային եղանակով և կրկնակի չափով ավելացնել ցեխի արտադրողականությունը։

Գերազանց աշխատանքի համար Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի քիմիական ցեխին (ցեխի պետ՝ Ա. Ասլանյան) շնորհվել է կոմունիստական աշխատանքի ցեխի կոչում։ Ընթացիկ տարվա չորս ամսում նա պլանից դուրս կոլտնտեսություններին ու սովխոզներին է տվել մեծ քանակությամբ հանքային պարարտանյութեր։

Մայիսի մեկի նախօրյակին Շինարարության մինիստրության № 1 շինարարական տրեստը (Երևան) Կիևյան ու Կոմիտասի փողոցներում, Շահումյանի շրջանի բնակելի մասսիվում շահագործման հանձնեց բնակելի նոր տներ։ 1961 թվականի սկզբից տրեստի կոլեկտիվը շահագործման է հանձնել 21.684 քառ. մետր բնակելի տարածություն, որը կազմում է չորս ամսվա պլանի 149 տոկոսը։

Երեք հարյուր տոկոս— այս թիվն է գրվում ա-

մեն հեղափոխությունից հետո Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի գործիքային ցեխի կոմունիստական աշխատանքի այն բրիգադայի ցուցանիշների տախտակում, որի ղեկավարն է ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Վ. Ղազարյանը։

Ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի, Հայկական ՍՍՌ ժողտնտխորհը և ՀԱՄԽ-ը մայիսի մեկից մինչև սեպտեմբերի 30-ը ռեսպուբլիկայի ձեռնարկություններում և կառույցներում անց են կացնում գյուտարարական և ռացիոնալիզատորական աշխատանքի կազմակերպման մրցանակաբաշխություն-ստուգատես։

Սկսվել է Երևան—Հրազդան երկաթուղագծի էլեկտրիֆիկացումը, որը պետք է ավարտվի մինչև ընթացիկ տարվա վերջը։ Այդ նպատակով ՍՍՌՄ Հաղորդակցության ճանապարհների մինիստրությունը բաց է թողել 1,5 միլիոն ռուբլի։

Երևան քաղաքում գազիֆիկացված է 1500 բնակարան, բնական գազով է աշխատում ավելի քան քըսան ձեռնարկություն։ Մինչև ընթացիկ տարվա վերջը գազիֆիկացվելու է ևս 2000 բնակարան։

Ժամկետից շուտ օգտագործման հանձնվեց Կոտայքի ջրանցքի շինարարության երկրորդ հերթը։

Սևանի շրջանի աշխատավորների միջնորդությամբ նորաստեղծ բնակավայրն անվանվեց Գագարին



ավան, դասվելով այն քաղաքատիպ ավանների կատեգորիային։

Շահումյանի շրջանի Նոր Արեշի կոլտնտեսության երիտասարդ կթվորուհի Ն. Ամիրյանը պարտավորվել է իրեն ամրացված յուրաքանչյուր կովից ստանալ 4500 կիլոգրամ կաթ։ Նա խոսք է տվել այդ պարտավորությունը կատարել մինչև ՍՄԿՊ XXII համագումարի բացման օրը։ Կատարելով իր ստանձնած պարտավորությունը, այժմ կթվորուհին օրական ստանում է 140—150 կիլոգրամ կաթ։

Վեդու շրջանի Ենգիջայի կոլտնտեսության երիտասարդական այն բրիգադան, որը ղեկավարում է Մ. Ավետիսյանը, պայքարում է նույն հողատարածությունից ընթացիկ տարում ստանալ եգիպտացորենի երկու բերք՝ յուրաքանչյուր հեկտարից հավաքել 950 ցենտներ կանաչ մասսա և 70 ցենտներ հատիկ։

Ստեփանավանի շրջանի Պուշկինոյի կոլտնտեսության ոչխարապահները ծնած 530 մայր ոչխարից ստացել ու պահպանում են 562 գառ։ Նրանք խոսք են տըվել յուրաքանչյուր ոչխարից խուզել 4 կգ բուրդ։

Շամշադինի շրջանի Այգեձորի կոլտնտեսության Ի. Սուլյանի ղեկավարած տրակտորային բրիգադան յուրացրել է 12 հեկտար նոր հողեր, ուր ցանվել է եգիպտացորեն։ Բրիգադան որոշել է ընթացիկ տարում յուրացնել 25 հեկտար նոր հողեր։

Պատվով են կատարում իրենց պարտավորությու-
նը Սևանի շրջանի Դդմաշենի կոլտնտեսականները։ Նոր
հողերի յուրացման հաշվին հացահատիկային կուլ-
տուրաների ցանքատարածություններն ավելացել են
145 հեկտարով։ Կթվորուհիները ամեն մի կովի կաթ-
նատվությունը, նախորդ տարվա համապատասխան
ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացրել են
40 կիլոգրամով։

Նոյեմբերյանի կոլտնտեսությունը ավարտեց ե-
գիպտացորենի ցանքը։ Պարտավորությունից ավելի
ցանված է 40 հեկտար եգիպտացորեն։ Արճիսի կոլ-
տնտեսությունը տարեկան պարտավորությունից ավելի
պետությանն է վաճառել 10 տոննա կաթ և 124 տո-
կոսով կատարել մսի վաճառքի առաջին կիսամյակի
պարտավորությունը։

Գորիսի շրջանի Վերիշեն գյուղում օրերս շահա-
գործման հանձնվեց գյուղական գրադարանի շենքը՝
իր բոլոր հարմարություններով։

Ի նշանավորումն հարազատ պարտիայի համա-
գումարի, Ստեփանավան քաղաքի կոմերիտականները
հիմնադրեցին այգի՝ մեկ հեկտար տարածության վրա։
Արդեն տնկվել է 1500 դեկորատիվ ծառ ու 600 թուփ։



# ՓԱՐՈՍՆԵՐԻ ԲՐԻԳԱԴԱՆ

Արդեն հինգ տարի է, ինչ Արտավազդ
Մանուկյանը ղեկավարում է Վեդու շրջանի
Արարատի կոլտնտեսության դաշտավարա-
կան առաջին բրիգադան։ Անցնելով աշխա-
տանքի՝ նա միջոցներ որոնեց, որպեսզի
կարողանա ավելի արդյունավետ դարձնել
բրիգադայի աշխատանքը, հողից ստանա
այն, ինչ կարող է նա տալ։

Տարիների աշխատանքային փորձից
նրան հայտնի էր, որ հանրային դաշտերի
մշակության և բերքահավաքի գործի կազ-
մակերպիչն ու հրամանատարը դաշտավա-
րական բրիգադայի բրիգադիրն է։ Գիտեր,
որ բանիմաց բրիգադիրը լավ պետք է ճա-
նաչի բրիգադայի անդամներին, գիտենա
նրանց ընդունակությունը, իմանա, թե ով
ինչպիսի վերաբերմունք է ցույց տալիս դե-
պի գործը, հանրային ունեցվածքը։

— Փորձված բրիգադիրը ճիշտ է հաս-
կանում հողի լեզուն,— ասում էր Արտա-
վազդ Մանուկյանը,— գիտե նրա բերրիու-

թյունը և դրան համապատասխան դասավորում է ցանվող կուլտուրան, հսկում, հետևում մշակությանը, շարունակ հիշում, թե ինչպիսի պարտավորություն է ստանձնել և անդադրում ձգտում է այն կատարել։

Ձմեռ էր, երբ Մանուկյանին բրիգադիր նշանակեցին։ Ձմռան օրերը նա աննպատակ չանցկացրեց, ամենից առաջ, ձեռնամուխ եղավ իր գիտելիքների հարստացմանը։ Հենց այդ ժամանակ լույս էր տեսել «Դաշտավարական Բրիգադայի բրիգադիրի տեղեկագիրք»-ը, որը մինչև օրս էլ հանդիսանում է նրա լավ ուղեցույցը։ Այնտեղ ամենից առաջ պարզաբանված են պարտիայի և կառավարության որոշումները դաշտավարական բրիգադայի՝ որպես աշխատանքի կազմակերպման հիմնական և գլխավոր ձևի մասին, ապա տրված են արտադրության կազմակերպման ուղիները և դաշտային կուլտուրաների մշակության ագրոտեխնիկան։ Այդ գիրքը Մանուկյանին շատ օգնեց։ Հաճախ, երբ նա զրուցում է մյուս բրիգադիրների հետ և իմանում, որ նրանք չունեն այդ գիրքը, զարմանում է. ինչպե՞ս կարելի է չառաջնորդվել նրանով, այնտեղ որքա՜ն ուսուցողական նյութեր կան։ Ուսուցողական այդ ձեռնարկում ցույց



է տրված, թե ինչպես պետք է աշխատանքը բրիգադայում կազմակերպել անհատական և մանր-խմբային գործավարձի հիման վրա։

Ինչ խոսք, որ Մանուկյանը չբավարարվեց այս ձեռնարկով։ Օրվա թերթերը, գյուղատնտեսական ամսագրերը, մեթոդական զանազան աշխատություններ ևս ուսումնասիրեց։ Դրան օգնեց նաև այն, որ նա սիրում էր իր աշխատանքը։

Եկավ գարունը։ Բրիգադան աշխատանքի անցավ։ Անցած հինգ տարիների ստացած բերքը եթե դիագրամով արտահայտենք, ապա կստացվի անվերջ վեր ձգվող սյունակների շարք, որոնցից վերջինի՝ 1960 թվականին ստացված բերքն արտահայտող դիագրամ-սյունակի տակ պետք է գրել 44 ցենտներ բամբակ։

44 ցենտներ բամբակ... Անցյալ տարի 61 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից այս բրիգադայի մարդիկ հավաքեցին 44 ցենտներ հումք։ Ուրիշ խոսքով, մոտ 114 տոննա պլանից ավելի բամբակ հանձնեցին պետությանը։

Այժմ պատմենք բրիգադայի աշխատանքի փորձի մասին։

Բարձր բերքի առաջին նախապայմանը տվյալ կուլտուրայի համար հողի ընտրու-

թյունն է։ Խորհրդակցելով բրիգադայի լավագույն և փորձված բամբակագործների հետ, բրիգադիրը բամբակենուն տրամադրում է լավ մշակված և բերրի հողերը։

Բարձր բերքի կարևոր նախապայմաններից է ցանքի համար հողի նախապատրաստումը։ Աշնանը նախքան ցրտահերկ կատարելը կոլտնտեսականները հանքային պարարտանյութով պարարտացնում են հողը, ապա կատարում վարը։ Բրիգադիր Մանուկյանը անձամբ հետևում է վարի որակին։ Պետք է ասել, որ բրիգադայի մեխանիզատորները վարի, ցանքի և մշակման գործում ցուցաբերում են առավել բարեխղճություն։ Մինչև բամբակի ցանքը նրանք փոցխում են հողը, վերացնում կոշտերը, հավասարեցնում՝ լավ քառակուսիներ ստանալու համար։ Այդ ժամանակ էլ հողը պարարտացնում են օրգանական պարարտանյութերով։

Լավ բերքի ստացումը որոշվում է նաև լավորակ սերմացուով։ Ստանալով բամբակենու սերմացուն, բրիգադայի բամբակագործներն ախտահանում են այն, ապա ցանում։ Ցանքից անմիջապես հետո ոռոգում են։ Որոշ ժամանակ անց ծլաչուր են տալիս։ Եվ, երբ ծիլերը դուրս են գա-



լիս, արդեն երևում են բաց տարածությունները։ Հեկտարները լիարժեք դարձնելու նպատակով այդ ազատ տարածություններում հատացան են կատարում, ինչպես և ծածկում հողից դուրս մնացած սերմերը։

Երբ դաշտը ծածկվում է ծիլերով, բամբակագործների առաջին անելիքը լինում է նոսրացման աշխատանքը, միաժամանակ մեքենայական կուլտիվացիան, կամ բների փխրեցումը։

Շրջելով դաշտերը, բրիգադիրը և բամբակագործները որոշում են սնուցման ժամկետը։ Առաջին անգամ որպես լրացուցիչ սնուցում տալիս են սուպերֆոսֆատ։

Շուտով սկսում են երկրորդ մշակման աշխատանքը։ Վերջնական նոսրացումը և լրացուցիչ սնուցումը այս անգամ ամյակային սելիտրայով և սուպերֆոսֆատով են կատարում։ Ավելի ճիշտ՝ այն տեղերը, որտեղ ուժեղ են աճած լինում, պարարտացնում են սուպերֆոսֆատով, իսկ թույլ տեղերը՝ ամյակային սելիտրայով։

1959—60 թվականների ձմռանը բրիգադիրը և օղակավարները սովորում էին գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրողների խմբակում։ Նրանք այնտեղ շատ բան սովորեցին, ամենից առաջ՝ ուզբեկա-

կան բամբակագործների փորձը։ Նրանց օրինակով իրենք էլ կիրառեցին բազմազան ագրոմիջոցներ։ Հենց դա էլ նրանց շատ օգնեց։

Սակայն առջևում դեռ որքա՜ն գործ կար. ամենակարևոր հարցերից մեկն այն էր, թե կոլտնտեսականները ինչպես կպայքարեն վնասատուների դեմ։ Առանց սպասելու, որ հիվանդության նշաններ նկատվեն, բամբակագործները բույսերին սրսկում են դեղանյութը։

Բրիգադան մեծ ուշադրություն է դարձնում բամբակենու ծերատման վրա։ Այդ աշխատանքը կոլտնտեսականները կատարում են բարեխղճությամբ, ագրոկանոններին լիովին համապատասխան, լավ գիտենալով, որ փոքրիկ վրիպումը մեծ վնասներ կպատճառի։

Ինչպես հայտնի է, բերքահավաքը գյուղատնտեսական աշխատանքների վճռական էտապն է։ Դրա հաջող անցկացումից է կախված գործի հաջողությունը։ Այդ նկատի ունենալով, կոլտնտեսականները դաշտը մաքրում են մոլախոտերից, կարգի են բերում դաշտամիջյան ճանապարհները և պատրաստ վիճակում պահում բերքահավաքին անհրաժեշտ բոլոր ինվենտարը։



Բրիգադայի աշխատանքի դրական կողմերից մեկն էլ այն է, որ երբ սկսում են բացվել առաջին կնգուղները, բրիգադայի մարդիկ կատարում են ընտրովի հավաք։ Նման ձևի բերքահավաքը թե ապահովում է բամբակի որակը, թե քանակը։ Բերքահավաքը շուտով լայն ծավալ է ստանում, նրանում ընդգրկվում են բոլոր աշխատողները։ Բերքահավաքի օրերին բամբակագործների միջև նոր թափով է ծավալվում սոցիալիստական մրցությունը։ Միմյանց հետ մրցում են օղակները, առանձին հավաքավորները։ Բոլորն էլ պայքարում են իրենց պարտավորությունները մեծ չափով գերակատարելու համար։ Այս կերպ աշխատելով, նրանք անցյալ տարի մթերակայան հանձնեցին բացառապես առաջին և երկրորդ տեսակի բամբակ։

Բրիգադայի շատ հավաքավորներ բերքահավաքի առաջին շրջանում օրական հավաքում էին 60—70 կիլոգրամ բամբակ, իսկ կնգուղների լիովին հասունացման ժամանակ՝ 180—200 կիլոգրամ։ Անվանի հավաքավորներ Արև Բաղդասարյանը, Արև Սարգսյանը, Օֆելյա Հովհաննիսյանը, Ռիմա Գրիգորյանը սեզոնում հավաքեցին 8-9-ական տոննա բամբակ։ Պետք է խոստովա-

նել, որ այն հողակտորները, ուր ցանք էին կատարել քառակուսի բնային եղանակով, ավելի լավ արդյունք տվեցին։

Արարատի պայմաններում հեկտարից 25—27 ցենտներ բամբակ ստանալը բարձր ցուցանիշ է, բայց այս բրիգադայի բամբակագործների քրտնաջան և համառ աշխատանքի շնորհիվ ստացվեց 44 ցենտներ։ Բայց նրանք չեն հանգստանում ձեռք բերածով։ Չէ՞ որ բերքատվությունը սահման չունի։ Այս տարի Մանուկյանի բրիգադան պարտավորվել է հեկտարից ստանալ 45 ցենտներ բամբակ։

Անցած աշնանը, դաշտերը ցողուններից մաքրելուց հետո, կատարել են որակով ցրտահերկ, նախօրոք պարարտացրել հանքային և օրգանական պարարտանյութերով։ Նրանք անհրաժեշտ միջոցառումներ են նշել, որոնց կիրառումը հնարավորություն կտա յոթնամյակի երրորդ տարին բարձր բերքի տարի դարձնելու համար։ Բրիգադայի մարդիկ վճռել են պատվով դիմավորել ՍՄԿԿ XXII համագումարը։

Գ. ԱՐԵՎՅԱՆ

—◆—

ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՈՒԿՐԱԻՆԱՅՈՒՄ

## ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳԱՆՁԱՐԱՆ Է

ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի ամբիոնից ես խոստացա 1960 թվականին մեծ տարածության վրա աճեցնել եգիպտացորենի բարձր բերք։ 1960 թվականին մեր օղակը եգիպտացորեն աճեցրեց 125 հեկտար տարածության վրա։ 20 հեկտարի վրա ցանված էր «Զակարպատսկայա» տեսակի եգիպտացորեն, ընդ որում ամեն մի հեկտարից հավաքվեց 167 ցենտներ հատիկ եգիպտացորեն։ 105 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից, որ ցանված էր «Օդեսսկայա—10» տեսակի եգիպտացորեն, հավաքվեց 982-ական ցենտներ կանաչ մասսա՝ կողրերի հետ միասին՝ կաթնա-մոմային հասունության շրջանում։ Մեկ ցենտներ եգիպտացորենի ինքնարժեքը (նոր դրամով) կազմում է 32 կոպեկ, իսկ կանաչ մասսայինը՝ 2 կոպեկից էլ քիչ։

11 տարի է, ինչ աշխատում եմ, որպես

օղակավարուհի և այդ շրջանում մեր օղակը աճեցրել է եգիպտացորենի ավելի քան 25 հազար ցենտներ հատիկ և 39 հազար տոննա կանաչ մասսա։ Սրա շնորհիվ կոլտնտեսությունը արտադրել է 5 հազար ցենտներ խոզի միս և 68 հազար ցենտներ կաթ։ Այս շրջանի տարեկան միջին բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից կազմում է հատիկինը՝ 134 ցենտներ և կանաչ մասսայինը՝ 1.500 ցենտներ։

Տերնոպոլշչինայում եգիպտացորենի բարձր բերք են աճեցնում շատ կոլտնտեսություններ, բրիգադներ և օղակներ։ Այս բանին մեծ չափով օժանդակում է առաջավոր փորձի ուսումնասիրությունը և ներդրումը։ Պարտիայի մարզկոմի բյուրոյի որոշմամբ մեր օղակի բազայի վրա ստեղծվել է եգիպտացորենի բարձր բերքի վարպետներ պատրաստելու մշտապես գործող դպրոց։ Ամեն տարի մեզ մոտ սովորում են ավելի քան 300 օղակավար, որոնք ղեկավարում են կոմպլեքսային օղակներ։

Երիտասարդ եգիպտացորեն մշակողների հետ պարապմունքներ անց ենք կացնում տարեկան երեք անգամ՝ ըստ աշխատանքի շրջանների։ Տեսական աշխատանքը պրակտիկ աշխատանքի հետ ենք զուգակցում



անմիջապես դաշտում, օղակներում ներդնելով առաջավոր փորձը։ Անձնական փորձով մենք համոզվել ենք, որ եթե օղակավարները ոչ միայն տեսնում ու լսում են, թե ինչպես է կատարվում այս կամ այն ագրոտեխնիկական պրիոմը, այլև իրենց ձեռքով են այդ անում, ապա շատ լավ յուրացնում են։

Մեր դպրոցում դասախոսություններ են կարդում մարզային գյուղատնտեսական փորձակայանի գիտաշխատողները, շրջանների և կոլտնտեսությունների մասնագետները։ Առաջավոր փորձի ներդրման այսպիսի ձևը լավ արդյունքներ է տալիս։ Անցյալ տարի 133 օղակավարներ, որոնք սովորել էին այդ դպրոցում, յուրաքանչյուր հեկտարից հավաքեցին եգիպտացորենի 50 և ավելի ցենտներ հատիկ, իսկ 113 օղակներ՝ 600 և ավելի ցենտներ կանաչ մասսա։ Զալեշչիցկի շրջանի Կալինինի անվան կոլտնտեսությունից Մարիա Տիմչուկի օղակը 25 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 116 ցենտներ եգիպտացորենի հատիկ և 75 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից 1.195 ցենտներ կանաչ մասսա։

Մեր, ինչպես նաև մարզի մյուս կոլտն-

տեսություններում նախկինում նախընտրում էին սիլոսացու եգիպտացորեն. աճեցնել։ Ցանվում էին ուշ հասնող տեսակներ, որոնք մեծ քանակությամբ կանաչ մասսա էին տալիս։ Այս կապակցությամբ շատ էին աճեցվում հյութալի կերեր, իսկ հատիկը չէր բավարարում։ Ես գտնում եմ, որ մասնագիտացված օղակների հիմնական խնդիրը պետք է լինի հատիկ եգիպտացորեն աճեցնելը։

Փորձը ցույց է տալիս, որ սիլոսացու եգիպտացորենի բարձր բերք կարող են աճեցնել մեխանիզատորները իրենց սեփական ուժերով։ Ահա, օրինակ, մեր շրջանի Լենինի անվան կոլտնտեսության տրակտորային բրիգադայի բրիգադիր Ռոման Գավրիշչուկը արդեն երեք տարի շարունակ մեծ տարածությունների վրա ամեն մի հեկտարից ստանում է 700—1.000 ցենտներ կանաչ մասսա առանց ձեռքի աշխատանքի որևէ կորստի։

Ելնելով սրանից՝ մեր կոլտնտեսությունում որոշել են սիլոսացու եգիպտացորենի արտադրությունը հանձնել տրակտորային բրիգադային, իսկ օղակները կաճեցնեն միայն հատիկ եգիպտացորեն։

Քննարկելով 1961 թվականի մեր պլանները, պարտավորվեցինք 100 հեկտար տարածությունից աճեցնել և հավաքել 1.000 տոննա եգիպտացորենի հատիկ։

Անձնական փորձով մենք համոզվեցինք, որ յուրաքանչյուր հեկտարից հատիկ եգիպտացորենի 100 ցենտներ բերք ստանալու համար անհրաժեշտ է ամեն մի հեկտարի մեջ մտցնել 25 տոննա գոմաղբ, 4 ցենտներ հանքային պարարտանյութ, 4 ցենտներ թռչնաղբ և 2 ցենտներ մոխիր, ապահովել բույսերի անհրաժեշտ խտություն—յուրաքանչյուր բնում թողնել 2 բույս, խնամքով մշակել և անկորուստ հավաքել բերքը։

Մեր օղակի անդամները հավաստիացնում են պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, որ 1961 թվականի պարտավորությունները կկատարեն։ Մենք պատրաստ ենք այսուհետև էլ կուտակած փորձը կիսելու բոլորի հետ, ինչպես նաև ընդօրինակելու ուրիշների նորը, լավը։ Նորարարների փորձը իսկական ժողովրդական գանձարան է։

ԵՎԳԵՆԻԱ ԴՈԼԻՆՅՈՒԿ
Սոցիալիստական Աշխատանքի Հերոս,
Ուկրաինական ՍՍՌ Տեռնոպոլի մարզի
Ստալինի անվան կոլտնտեսության
օղակավարուհի

### ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՆԾԱԼԻ ՀՈԲԵԼՅԱՆԸ

*1. Սովետական Հայաստանը Մեծ Հոկտեմբերի ծնունդն է։*

*2. Սովետական Հայաստանը մեր մեծ Հայրենիքի ռեսպուբլիկաների համաստեղության մեջ։*

*3. Ամուր և անխախտ է մեր մեծ Հայրենիքի ժողովուրդների բարեկամությունն ու միասնությունը։*

*4. Հայաստանի Կոմունիստական պարտիան ՍՄԿՊ-ի առաջավոր ջոկատներից է։*

*5. Արդյունաբերության հզոր վերելքը Սովետական Հայաստանում։*

*6. Սովետական Հայաստանի գյուղատնտեսությունը 40-տարում։*

*7. Գրականության և արվեստի ծաղկումը Սովետական Հայաստանում։*

*8. Գիտության և ժողովրդական կրթության բուռն աճը Սովետական Հայաստանում։*



*9. Ծաղկում և բարգավաճում է Սովետական Հայաստանը։*

*10. Ինչպես են մեր ռեսպուբլիկայի աշխատավորները կատարում յոթնամյա պլանը։*

*11. Նոր հաջողություններով դիմավորենք ՍՄԿՊ XXII համագումարը։*

*12. Սովետական Միությունը խաղաղության պաշտպանն է ամբողջ աշխարհում։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ Կենտկոմի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ողջույնը Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում։*

**Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.**— *Ճառ, արտասանած 1961 թվականի մայիսի 6-ին Երևան քաղաքում տեղի ունեցած հանդիսավոր նիստում՝ նվիրված Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավոր-*

*ման 40-ամյակին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի և Հայաստանի Կոմունիստական պարտիայի 40-տարին, *զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի հանդիսավոր նիստում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում։*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1961 թվականի մայիսի 6-ի նիստում ընդունված նամակը՝ ուղղված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությանը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում։*

Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը Հայաստանում, *նյութեր տպագրված «Ս. Հ.-ի մայիսի 6-ի, 7-ի, 8-ի, 9-ի, 10-ի և 11-ի համարներում։*

—◆—

Նշումների համար



Նշումների համար




# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



**Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ**

Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

## СОДЕРЖАНИЕ



**Отдел пропаганды и агитации ЦК КП Армении**

**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 10 1961 г.**

*ՎՖ 01617* *Պատվեր 259* Տպաքանակ 9282

---

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

Գինը՝ 6 կոպ.